ակսելու, պատճառն այն է որ ոչ մէկ նորութիւն կայ վարչապետին վերադարձէն ի վեր: Այս պայմաններուն մէջ, ձեր բանակնացը կրնաք զրկել ըսելով թէ լաւ չարժած չէ առաջին անգամ: Ես բացարձակապէս կը մերժեմ ինծի համար, թոյլ տուէք ըսել մահուան սեմին վրայ, միացբանակի դաշինքը Ֆրանսայի վախճանն է: Ո՞վ կ'ըսէ թէ ես չեմ ուզեր միացեալ Եւրոպան: Կարելի չէ խաղաղութիւն հաստատել զայն փնտռելով պատերազմի ճամբուն վրայ: Մենք կ'ուզենք որ լուծում մը գտնուի ամբողջ Եւրոպայի համար: Մենք խաղաղութիւն կ'ուզենք խաղաղութեամբ եւ ոչ թէ զերազինումով: Ինչ կը վերաբերի միացեալ դաշինքի բանակին, ոչ մէկ արժէք պիտի ունենայ. որպէսզի բանակ մը արժէք ունենայ, պէտք է հոգի մը ունենայ: Ես կը նախընտրեմ ներկայ կացութիւնը, որ երաշխաւորուած է քառանգամ համաձայնութիւններով, քան թէ վեց պետութեանց այս համաձայնութիւնը որ յառեղօյն բարդութիւններ պիտի ստեղծէ եւ որ յիսուն տարի պիտի տեւէ: Ես կը մաղթեմ որ Ֆրանսայի ժողովուրդը վերածնի, վերստանալով իր նիւթական եւ բարոյական կորովը: Պրիւսէլի խորհրդաժողովը հաստատեց թէ ինչպէս կը վարուին Ֆրանսական վարչաձեւի հանրապետութեան հետ, երբ ղեկավարները կը կատարէ իր դերխաղանութեան եւ իրաւունքներուն վրայ: Միացեալ բանակի դաշինքը արկածախնդրութիւն մըն է. զգուշացէք»:

Ժողովը այնպիսի ընթացք մը առած էր որ, դաշինքին կուսակիցները չկրցան խօսք ուզել: Կատարեալ անելի մը մատնուած էին Պ. Ռոպէռ Շուման, Ժորժ Պիտօ, Փլեւէն, որ միացեալ բանակի ծրագրին հեղինակն է եւ ուրիշներ: Թերթերը կ'ըսեն թէ ամէնքն ալ տժգոյն եւ յոգնած երեւոյթ մը ունէին:

Հրատարակուած տեղեկութեանց համաձայն, դաշինքին դէմ քուէարկած էին համայնավարները եւ ուղեկիցները ամբողջութեամբ (հարիւր քուէ), 32 արմատականներ (կէսը), 43 ընկերվարականներ, այսինքն ճիշդ կէսը, 11 հոգի Փլեւէնի խմբակցութենէն (կէսը), 84 հոգի զօր. տը Կոլի կուսակիցներէն եւայլն: Իսկ թեր քուէարկած էին 50 ընկերվարականներ, 35 արմատականներ, ութ հոգի Փլեւէնի կուսակիցներէն, 80 երեսփոխաններ Ժողովրդական Շարժումէն (մեծ մասը), 16 հոգի զօր. տը Կոլի կուսակիցներէն եւայլն:

### ՈՒՐԻՇ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ

Ազգ. Ժողովի քուէարկութենէն անմիջապէս վերջ, Պ. Մենտէս-Ֆրանս ձեռնարկեց նոր բանակցութիւններ կատարելու Անգլիոյ եւ Մ. Նահանգներու հետ, որպէսզի ուրիշ ձեւ մը գտնեն, ապահովելու համար Եւրոպայի հաւաքական պաշտպանութիւնը Գերմանիոյ մասնակցութեամբ: Պ. Իտըն, որ Մանիլա պիտի երթար մասնակցելու համար հարաւ-արեւելեան Ասոյ խորհրդաժողովին, յետաձգեց իր ճամբորդութիւնը եւ երկար տեսակցութիւն մը ունեցաւ Չըրչիլի հետ:

× Փարիզի համայնավար պաշտօնաթերթը, Իւմանիթէ, խոշոր խորագիրներով կ'աւետէ Ազգ. Ժողովին մերժումը, իբրեւ «յաղթանակ Ֆրանսայի ժողովուրդին եւ խաղաղութեան»: Ֆիկառօ դառնօրէն կ'ողբայ որ «խեղդելու գործողութիւն մը կատարուեցաւ, կատարեալ յաղթանակ մը ապահովելով համայնավարներուն»: Եւ խմբագրականը կը վերջացնէ հետեւեալ բառերով. — «Վաղուան համար կարելի է վախեր զգալ, իսկ այս իրիկուն՝ ամօթ»:

× Ազգ. Ժողովի քուէարկութենէն վերջ, երբ դաշինքին հակառակորդները «Մարսէյէզ»ը կը թնդացնէին, Ժողովրդական Շարժումի երեսփոխանները պոռացին. — «Մոսկուա գացէք»: Աննկարագրելի ժխոր մը կը տիրէր ժողովասրահին մէջ: Շատեր ձգեցին գացին: Նախկին վարչապետ Փոլ Ռենօ գիտել տուաւ թէ Ֆրանսայի խորհրդարանական պատմութեան մէջ առաջին անգամ է որ դաշնագիր մը կը մերժուի, առանց թոյլ տալու որ անոր հեղինակը կամ զայն ստորագրողը բեմ բարձրանայ պաշտպանելու համար:

Միջադէպեր ալ պատահեցան նրբանցքներուն մէջ: Անծանօթ մը սողոսկած էր ժողովասրահին մէջ: Բարապանները զայն հանեցին: Ստուգուեցաւ թէ «Քրիստոսի աշակերտ» մըն է:



### ԴՊՐՈՑՆԵՐՈՒ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆՑ

ՄԱՐՍԷՅԼ. — Ուսուցիչ Ազգէն Մարտիրոսեան տրամադրելի ժամանակ ունի շաբաթը երկու անգամ դասաւանդելու որ եւ է դպրոցի մէջ:

Հասցէ. —
Mardirossian
13, Bld. de Cazoran, St. Jerôme
Marseille

### Կ'ՈՒԶՈՒԻ

Հայ երիտասարդ մը 21 – 30 տարեկան որ ունենայ որոշ պատրաստութիւն եւ ծանօթ ըլլայ առեւտրական գործերու:

Անձամբ դիմել Յառաջի վարչութեան:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փաստրմաճեան ընտանիքը եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ողբացեալ

ՀՐԱՆԴ ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆԻ

դառն մահուան առթիւ:

× Այրի տիկին Ատրինէ Պարոնվարդեան եւ բոլոր ազգականները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ՝ հայ ամուսնոյն եւ ազգականին՝

ԵՐՈՒԱՆԴ ՊԱՐՈՆՎԱՐԴԵԱՆԻ

մահուան առթիւ:



## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ կնունքի, պսակի, յուղարկաւորութեան եւ հոգեհանգստեան համար պէտք է կանխապէս եկեղեցիի քարտուղարութեան հետ ժամադրուիլ, անձամբ, նամակով կամ հեռախօսելով 339, Ավընիւ տիւ Փրատօ: Հեռախօս՝ Փրատօ 84 – 70: Չժամադրուած արարողութիւններու համար եկեղեցին պատասխանատուութիւն չի ստանձներ:



## «ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ

ԿԸ ԳՏՆՈՒԻՆ ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ. —

ՌՈՒԲԷՆԻ ՅՈՒՇԵՐԸ, 7 հատոր: Գին 6000 Ֆրանք:

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Ն. Ադոնց), գին 1000 Ֆրանք:

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ, (Ֆրանսերէնի թարգմանեց Լիւք Անտրէ Մարսէլ, ուրիշ ժողովրդական բանաստեղծութիւններով): Գին 1000 Ֆրանք:

Կ. ՍԱՍՈՒՆԻԻ «Պատմութիւն Արեւմտահայ արդի Գրականութեան» Գին 800 Ֆր.:

Թղթատարի ծախքը գնողին վրայ:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Վճարումները դիւրացնելու համար կը խնդրենք մեր բաժանորդներէն դիմել հետեւեալ հասցէներուն. —

ԱՆԻԷՌ, ՔՈԼՈՄՊ – ՊՈՒԱ-ՔՈԼՈՄՊ. — Ընկերներ Յակոբ Հիսայեանի եւ Արամ Աւետիսեանի:

ԻՍԻ. եւ ՄԷՕՏՕՆ. — Ընկերներ Երուանդ Ատանալեանի, Նշան Դարբինեանի կամ սրճարանապետ Զատիկեանի:

ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՌՍԵԼ. — Ընկերներ Արփիար Մարտիրոսեանի եւ Կարօ Երանեանի:

ԱՆԿԷՆ – ՄՈՆՄՈՐԱՆՍԻ. — Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի:

ԱԼՖՈՐՎԻԼ. — Ընկեր Բարթող Փափազեանի:

ՇԱՒԻԼ – ՎԻՐՈՖԼԷ. — Ընկեր Գրիգոր Կիւլեանի:

ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆ. — Ընկերներ Ներսէս Տակառեանի կամ ԲարթամՊասմաճեանի:

ՍԵՒՐԱՆ. — Պ. Խլոյեանի:

Կանխայայտ շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



- Imp. Araxes 46, rue Richer. Paris -

պայի պաշտպանութեան : Արեւմտեան Գերմանիան պատրաստ է մասնակցելու ութ պետութեանց խորհրդաժողովին, մէջն ըլլալով Ֆրանսան :

Ամերիկայի ծերակուտականը միացեալ բանակի դաշինքին ձախողմանպատասխանատուութիւնը կը ձգէ Պ. Մենտէս Ֆըրանսի վրայ : Այս առթիւ ըսաւ թէ իր անկեղծ եւ խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Նախագահ Այզընհաուըրի եւ Պ. Ֆ. Տըլըսի հետ, ողբերգութիւն համարելով Ֆրանսայի տուած վերջին որոշումը : «Ես չեմ կրնար հաւատալ թէ Ֆրանսացիներու ազատ կամքին արտայայտութիւնը միեւնոյն արդիւնքը պիտի տար : Արեւմտեան Գերմանիան կատարեալ գերիշխանութիւն ստանալէ զատ, պէտք է ի վիճակի ըլլայ աջակցելու իր իսկ հռչակած գաղափարներուն պաշտպանութեան : Կը հաւատամ թէ մեր կառավարութիւնը պիտի օգնէ Գերմանիոյ, այս ուղղութեամբ» :

## ԵԳԻՊՏՈՍ ՋՈՒԶԵՐ ԴԱՇՆԱԳԻՐ ԿՆՔԵԼ

Եգիպտոսի վարչապետը, գնդ. Կամալ Նասըր, յայտարարեց թէ իր կառավարութիւնը ամէն կերպով Արեւմուտքի հետ է, բայց չուզեր մասնակցիլ Միջին Արեւելքի պաշտպանութեան դաշինքի մը, նըկատելով որ համայնավարները պիտի չահագործեն այս պարագան, գրգռելու համար Արաբներու կասկածոտ միտքերը : Յեղափոխական Խորհուրդը զեկոյց մը հրատարակելով այս առթիւ, կ'ըսէ թէ գիտէ որ Անգլիա եւ Մ. Նահանգները երբեք պիտի չյարձակին արաբական աշխարհին վրայ : «Եգիպտոսի մշակոյթը, առեւտուրը եւ տնտեսական կեանքը կապուած են Արեւմուտքի հետ : Գաղափարական տեսակէտով Եգիպտոս բացէ ի բաց հակառակ է համայնավարութեան : Զինուորական տեսակէտով Եգիպտոս այն կարծիքն ունի թէ Միջին Արեւելքի ըսպառնացող միակ համաշխարհային վըտանգը ռուսական արշաւանքն է» :

Այս պաշտօնական զեկոյցը օտար թըղթակիցներուն յանձնուեցաւ իբրեւ յուշագիր, պարզելու համար Եգիպտոսի արտաքին քաղաքականութիւնը, մանաւանդ որ այս միջոցին Իսլամ Եղբայրութիւնը, համայնավարները եւ կարգ մը քաղաքական վարիչներ պայքար կը մղեն կառավարութեան դէմ, անգլեւեգիպտական համաձայնութեան առթիւ :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԴԱՀԼԻՃԷՆ հրաժարեցան երեք նախարարներ, որոնք համաձայն էին միացեալ բանակի դաշինքին վաւերացման : Նախապէս ալ ուրիշ երեք նախարարներ հրաժարած էին : Կառավարութիւնը նիստի հրաւիրուեցաւ, խնդիրը քննելու համար :

ԵՐԵՔ ՄԵԾԵՐԸ յառաջիկայ շաբթու պիտի ղրկեն իրենց պատասխանը՝ Մոսկուայի վերջին երկու ծանուցագիրներուն : Երեքը միասին որոշած են չվերսկսիլ բանակցութիւնները Խ. Միութեան հետ, գերմանական հարցին ինչպէս եւ Եւրոպայի ապահովութեան մասին, մինչեւ որ Մոսկուա չհաւանի ազատ ընտրութիւններ կատարել ամբողջ Գերմանիոյ մէջ, ինչպէս եւ ստորագրել Աւստրիոյ հաշտութեան դաշնագիրը :

ԱՆԳԼԻՈՅ նախորդ վարչապետը, Պ. Էթլի, որ քննական պտոյտ մը կը կատարէր կարմիր Չինաստանի մէջ, յայտարարութիւն մը հրատարակելով, կ'ըսէ թէ մեծ տարբերութիւններ կան Խ. Միութեան եւ Չինաստանի միջեւ, համայնավար ծրագրի գործադրութեան տեսակէտով : Օրինակ, Չինացիները աւելի մեղմ կը վարուին գիւղացիներուն հետ, աւելի ճկուն են անհատական առեւտուրին հանդէպ, կարճ խօսքով՝ նուազ խստութեամբ կը կիրարկեն Մարքսի ծրագիրը :

ԹՈՒՆՈՒԶԻ մէջ սպաննուեցան ֆրանսացի օդաչու սպայ մը եւ չորս զինուորներ, ընդհարելով խումբ մը լեռնականներու հետ :

ԹՈՒՐՔԻՈՅ հանրապետութեան նախագահը, Ճէլալ Պայար, Պելկրատ հասաւ : Մինչեւ Ադրիականի նաւահանգիստը զբօսանաւին կը հետեւէին չորս թրքական եւ երկու եուկոսլաւական թորփիլահալածներ : Նախագահին կ'ընկերանան վարչապետը եւ ուրիշ խորհրդականներ :

ԻՍՐԱՅԷԼԻ խորհրդարանը բանաձեւ մը քուէարկեց, որով խոր մտահոգութիւն կը յայտնէ, Մ. Նահանգներու եւ Մեծն Բրիտանիոյ նոր քաղաքականութեան հանդէպ՝ Միջին Արեւելքի մէջ (վերազինում արաբական երկիրներու) :

## «ՅԱՌԱՋ»Ի ՄՕՏ

ԿԸ ԳՏՆՈՒԻՆ ՀԵՏԵՒԵԱԼ ԳԻՐՔԵՐԸ.— ՌՈՒԲԷՆԻ ՅՈՒՇԵՐԸ, 7 հատոր : Գին 6000 ֆրանք :

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ (Ն. Ադոնց), գին 1000 ֆրանք :

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ, (ֆրանսերէնի թարգմանեց Լիւք Անտրէ Մարսէլ, ուրիշ ժողովրդական բանաստեղծութիւններով) : Գին 1000 ֆրանք :

Կ. ՍԱՍՈՒՆԻի «Պատմութիւն Արեւմտահայ արդի Գրականութեան» Գին 800 ֆր. :

Թղթատարի ծախքը գնողին վրայ :

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ԼԻՈՆ.— Դպրաց դասը կը հրաւիրէ բարեպաշտ ժողովուրդը ներկայ ըլլալ իր եռանդուն անդամներէն Պ. Պէրպէրեանի զինուորական ծառայութեան մեկնումին առթիւ, իր ընտանեկան պարագաներուն ննջեցելոց հոգւոյն համար կատարուելիք հոգեհանգստեան պաշտօնին, այս կիրակի, Հայոց եկեղեցին, 69 ռիւ Լուի Պլան :

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ԱՆԻ, ՎԻԷՆ.— Ուրբաթ օրուան համար ծանուցուած ժողովին ազդը ստացանք ուրբաթ առտու :

Մ. ՄԻՐԶԷ, ԼԻՈՆ.— Կրնաք ղրկել :

## Կ'ՈՒԶՈՒԻ

Հայ երիտասարդ մը 21 – 30 տարեկան որ ունենայ որոշ պատրաստութիւն եւ ծանօթ ըլլայ առեւտրական գործերու :

Անձամբ դիմել Յառաջի վարչութեան :

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Վճարումները դիւրացնելու համար կը խնդրենք մեր բաժանորդներէն դիմել հետեւեալ հասցէներուն.—

ԱՆԻԷՌ, ՔՈԼՈՄԲ – ՊՈՒԱ-ՔՈԼՈՄԲ.— Ընկերներ Յակոբ Հիսայեանի եւ Արամ Աւետիսեանի :

ԻՍԻ. եւ ՄԷՕՏՕՆ.— Ընկերներ Երուանդ Ատանալեանի, Նշան Դարբինեանի կամ սրճարանապետ Զատիկեանի :

ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՌՍԵԼ.— Ընկերներ Արփիար Մարտիրոսեանի եւ Կարօ Երանեանի :

ԱՆԿԷՆ – ՄՈՆՄՈՐԱՆՍԻ.— Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի :

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ընկեր Բարթող Փափազեանի :

ՇԱՒԻԼ – ՎԻՐՈՖԼԷ.— Ընկեր Գրիգոր Կիւլեանի :

ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆ.— Ընկերներ Ներսէս Տակառեանի կամ ԲարթամՊասմաճեանի :

ՍԵՒՐԱՆ.— Պ. Խլղյեանի :

Կանխայայտ շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը ցաւակցութիւն կը յայտնէ Տէր եւ Տիկին Արամ Պէտիկեանի (Մարսէյլ) իրենց մօր մահուան առթիւ :

★

Տէր եւ Տիկին Բիւզանդ Աճէմեան ցաւակցութիւն կը յայտնեն տէր եւ տիկին Արամ Պէտիկեանի իրենց մօր մահուան առթիւ եւ հազար ֆր. կը նուիրեն Հ. Յ. Դ. Տան ֆոնտին :



## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Արձանագրութիւնները բացուած են 1954-1955 ուսումնական տարեշրջանի համար : Կը խնդրուի բոլոր հայ ծնողներէն, որոնք կը փափաքին ազգային այս դարաւոր հաստատութեան մէջ ապահովել իրենց զաւակներուն տոհմային եւ ֆրանսական կրթութիւնը, օր առաջ, դիմել տեսչութեան, արձանագրութեան համար :

Մուրատեան վարժարանի այցելութիւնները՝ Շաբաթ եւ Երկուշաբթի օրերը եւ ժամադրութեամբ :

Direction Collège Arménien
26, Rue Troyon - Sèvres (S. O.)
Tél. : OBS. 18-28

## ԴՈՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ խնամակալութիւնը կը յայտնէ պաշտօնապէս, որ աշակերտուհիներու ընդունելութեան արձանագրութիւնները բացուած են արդէն : Ծնողները կ'ընդունուին երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ օրերը, մինչեւ կէս օր :

Դիմել վարժարանը,

1, Bd. du Nord, Le Raincy
Autobus 146 de l'Eglise de Pantin.



- Imp. Araxes 46, rue Richer. Paris

բարեկամը, Պ. Յ. Ֆէյտի, դասախօս Ա-րեւելեան լեզուներու վարժարանին մէջ: Դասախօսութեանց կը հետեւէին վիճա-բանութիւններ: Ունկնդիրներուն մէջ կը գտնուէին Պ. Վաղարշակ Մելիքեան, Տէր եւ Տիկ. Խանտանեան, Տիկին Ֆէյտի, Տիկին Պատմագրեան (Փարիզէն), Տիկին Երէցեան, Պ. Նորայր Վրոյր (Պել-ժիա):

Համագումարը բացառիկ յաջողութիւն ունեցաւ: Ընդունելութիւններ սարքուած էին Քէմպրիճի քաղաքապետութեան եւ համալսարանի վարչութեան կողմէ:

Տէր եւ Տիկին Ֆէյտի եւ հայ հիւրերը Օգոստոս 29ի կիրակին Լոնտոն հասնե-լով ներկայ եղան եկեղեցւոյ արարողու-թեանց: Յաջորդ օրը, երկուշաբթի, ժա-մը 20ին Համայնական Խորհուրդը ըն-դունելութիւն մը սարքեց շքեղ պանդոկի մը մէջ: Այս առթիւ ճառեր խօսեցան Հո-գեւոր Հովիւը, Պսակ վարդապետ, Ար-շակ Սաֆրաստեան, Խաչատուրեան, ներ-բողելով Պ. Ֆէյտիի թանկագին ծառայու-թիւնները հայ դպրութեան: Մեր Փրան-սացի հիւրը շնորհակալութիւն յայտնե-լով, փառաբանեց հայերէնը: «Ձեր լեզուն հրապոյր մը ունի որ չեմ կրնար բացատրել: Ան կախարդած է զիս: Հա-յերէնը իր բառամթերքով աշխարհի հա-րուստ լեզուներէն մէկն է: Սիրեցէք ձեր լեզուն, Հայեր»:

Խօսեցաւ նաեւ հիւրերէն Միւ-ռոն վրդ. (Երուսաղէմ) որ Ամերիկա կ'երթայ եւ որ տեղեկութիւններ հաղոր-դեց Երուսաղէմի վանքի մասին: Տիկին Ֆէյտի, որ Հայուհի մըն է եւ որուն միակ մանչ զաւակը Փարիզի Մուրատեան վար-ժարանը կ'ուսանի, շնորհակալութիւն յայտնեց: Պսակ վրդ. «Ով Մեծասքանչ»ը երգեց ընկերակցութեամբ դաշնակի:

Նոյնպէս խօսեցաւ Պ. Վ. Մելիքեան, մաղթելով որ Լոնտոն շուտով ունենայ իր հայկական տունը: Հոգեւոր հովիւը պահ-պանիչով փակեց այս գեղեցիկ թէյասե-ղանը որ տեւեց մինչեւ ուշ ատեն:

ՅՈՎՀ. Կ. ՁԱԼԸԳԵԱՆ

## ԺԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՍԿՈՒԱ գնաց Ֆրանսայի համայնա-վար կուսակցութեան ընդհ. քարտուղա-րը, Ժաք Տիւքլօ, խորհրդակցելու համար Մորիս Թորէզի հետ:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ամերիկեան խարիսխնե-րուն շինութիւնը պիտի սկսի յառաջիկայ նոյեմբերին:

ՅՈՐԴԱՆԱՆԻ Հիւսէյին թագաւորը ազ-դարարեց անգլիական եւ ամերիկեան դեսպաններուն թէ պիտի հարկադրուի վերաքննել իր քաղաքականութիւնը, ե-թէ Իսրայէլ շարունակէ յարձակումներ գործել:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նախագահը ստո-րագրեց այն օրինագիծը որ մահապատիժ կը տրամադրէ խաղաղութեան ատեն գործուած լրտեսութեան հեղինակներուն:

ԱԹԷՆՔԷՆ կը հեռագրեն թէ կառավա-րութիւնը յաջողեցաւ խորտակել ցանց մը որ լրտեսութիւն կը կատարէր ի վնաս Յունաստանի եւ Դաշնակիցներուն: Վար-չապետը կ'ըսէ թէ «ամենամեծ յաջողու-թիւնն է այս քաղաքացիական պատերազ-մի դադարումէն ի վեր (1949): Կառավա-րական ցեկոյցը մանրամասնութիւններ չի տար եւ չի յայտներ կալանաւորնե-րուն թիւը: Մառեշալ Փափաղոսի յայ-տարարութեան համաձայն, «լրտեսները մարզուած էին Մոսկուայի զինուորական եւ քաղաքական ակադեմիային մէջ եւ կարմիր ցանցը ահագին գումարներ ունէր իր տրամադրութեան տակ»: Ձերբակալ-ուած է ցանցին վարիչը, գօր. Խարիլաոս Ֆլորաքիս, այլ անուամբ Հարիւրապետ Իօթիս: Կազմակերպութիւնը կ'օգտագոր-ծէր վերջերս ազատ արձակուած համայ-նավարներ: Գլխաւոր վարիչներէն 40 հո-գի ձերբակալուած են:

ԱՒՍՏՐԱԼԻՈՅ բողոքին վրայ, Նոր Քա-լետոնիոյ Ֆրանսական իշխանութիւնները ձերբակալեցին Ֆրանսական դեսպանա-տան պաշտօնեաներէն Տիկին Օլիէն, այն ամբաստանութեամբ թէ գաղտնի տեղե-կութիւններ հաղորդած է պոլշեւիկեան գործակալներու, Հնդկաչինի զինուորա-կան ուժերու մասին: Տիկինը նախապէս պաշտօնավարած է Պէյրութի մէջ:

ՏԻԷՆ ՊԻԷՆԻ ՀԵՐՈՍԸ, գօր. տը Քասթր որու մասին մտահոգութիւն կը տի-րէր Փարիզի մէջ, ազատ արձակուեցաւ Սեպտ. 3ին: Հեռագիրը կ'ըսէ թէ տաժա-նելի օրեր անցուցած է գերութեան ըն-թացքին, 30 քիլոմեթր քալած է ձեռքերը կապուած են.:

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ

Արձանագրութիւնները բացուած են 1954 1955 ուսումնական տարեշրջանի համար: Կը խնդրուի բոլոր հայ ծնողներէն, ո-րոնք կը փափաքին ազգային այս դարա-նոր հաստատութեան մէջ ապահովել ի-րենց զաւակներուն տոհմային եւ Փրան-սական կրթութիւնը, օր առաջ, դիմել տեսչութեան, արձանագրութեան համար:

Մուրատեան վարժարանի այցելու-թիւնները՝ Շաբաթ եւ Երկուշաբթի օրերը եւ ժամադրութեամբ:

Direction Collège Arménien
26, Rue Troyon - Sèvres (S. O.)
Tél. : OBS. 18-28

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

ԴՊՐՈՑԱՍԻՐԻ խնամակալութիւնը կը յայտնէ պաշտօնապէս, որ աշակերտու-հիներու ընդունելութեան արձանագրու-թիւնները բացուած են արդէն: Ծնողները կ'ընդունուին երեքշաբթի, հինգշաբթի եւ շաբաթ օրերը, մինչեւ կէս օր:

Դիմել վարժարանը,
1, Bd. du Nord, Le Raincy
Autobus 146 de l'Eglise de Pantin.

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Միլանոյէն Տէր եւ Տիկին Յարութիւն Տիլսիզեան, Այրի Տիկին Եսթեր Տամ-լամեանի (ծնեալ Տիլսիզեան) մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի տասը հա-զար լիր կը նուիրեն Դպրոցասէր Տիկ-նանց Վարժարանին:

Ստանալ «Յառաջ»ի վարչութենէն:

×

Տէր եւ Տիկին Հր. Փաստրմաճեան ի-րենց սիրեցեալ եւ համանուն ազգականին Հրանտ Փաստրմաճեանի ղառնաղէտ մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի հազար Փր. կը նուիրեն Յ.Կ. Խաչի Փա-րիզի մասնաճիւղին:

Ստանալ «Յառաջ»էն:







Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

## ԿՈՄՍԻ

(ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ)

«Խոնարհ հերոսները» եւ «Իմ Յուշերը» տրամադրելի են տակաւին:

Դիմել Գավէզեանի՝
Cavezian, 37 Rue de Trevise
Paris (9e)

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւ-ղին ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 21-ին, 40 պիս, ռիւ էթիէն Տօլէ սրահարանը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհի-ներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

Այս առթիւ Հաստատեց թէ ուղղակի բանակցութիւններ կը կատարուին Մեծն Բրիտանիոյ եւ Մ. Նահանգներուն հետ, Գերմանիոյ գերիշխանութեան եւ վերազինման մասին: «Որոշեցինք այս բանակցութիւնները կատարել, նկատելով որ Պրիւքսէլի մէջ Ֆրանսայի հետ կատարուած բանակցութիւնները դրական արդիւնքի մը չյանգեցան»:

Տօքթ. Ատընաուըրի առաջին ճառն էր այս, միացեալ բանակի ծրագրին ձախողումէն ի վեր: Գերման վարչապետը մէկ օր առաջ ալ պատասխանելով «Թայմզ»ի թղթակցին հարցումներուն, խստօրէն քննադատած էր Պ. Մենտէս Ֆրանսը, իբրեւ պատասխանատու՝ միացեալ բանակի ծրագրին ձախողման: «Կը ցաւիմ ըսելու որ Պ. Մենտէս Ֆրանս կ'ուզէր ոչնչացնել միացեալ բանակի դաշինքը: Ազգ. ժողովը քուէարկութիւն կատարեց ժողովական ձեւակերպութեան մը վրայ եւ դաշինքին գլխաւոր պաշտպանները չկրցան խօսք առնել: Զօր. տը Կոլի կուսակիցները, համայնավարները եւ դրժողները միացան մերժելու համար դաշինքը: Խնդիրը այն է որ Պ. Մենտէս Ֆրանս մեծամասնութիւն չունի իր ետին»:

«Լը Մոնտ» խմբագրականով մը կը բողոքէ այս յայտարարութեան դէմ, «անթոյլատրելի միջամտութիւն» համարելով: Ուրիշ թերթեր ալ կը քննադատեն:

× Անգլ. կառավարութիւնը գործի ձեռնարկած է, խորհրդաժողովի մը հրաւիրելու համար 8 – 9 պետութիւններ, որպէսզի նոր բանաձեւ մը գտնեն, Ատլանտեան խորհուրդէն առաջ: Հաւանական է որ ժողովը գումարուի Սեպտ. 15-ին, քանի որ ՄԱԿի ընդհ. ժողովը պիտի բացուի Սեպտ. 21ին:

### ԾԱՆՐ ԴԷՊՔԵՐ Ծ. ԱՐԵՒԵԼՔԻ ՄԷՋ

Ծանր դէպքեր պատահեցան Ծայր. Արեւելքի մէջ: Ամերիկեան ռմբաձիգ օդանաւ մը վար առնուեցաւ ռուսական երկու «Միկ» օդանաւերու կողմէ, Ճափոնական ծովուն մէջ: Օդաչուներէն մէկը անհետացած է: Մոսկուայի զեկոյցը կ'ըսէ թէ ամերիկեան օդանաւը բռնաբարած էր Խ. Միութեան օդային տարածութիւնը: Ամերիկեան կառավարութիւնը մերժեց այս մեղադրանքը, պնդելով թէ իրենց օդանաւը 44 մղոն հեռու էր Սիպերիոյ ծովափէն:

Մ. Նահանգներու ծերակոյտին հանրապետական մեծամասնութեան առաջնորդը, Նոլէնտ, հեռագիր մը ուղղելով նախագահ Այզընհաուըրի, պահանջեց խզել դիւանագիտական յարաբերութիւնները Խ. Միութեան հետ: Ծերակուտականը մասնաւորապէս կը շեշտէ.— «Ստիպողաբար կը պահանջեմ ճամբել խորհրդային դեսպանը եւ իր պաշտօնէութիւնը»:

× Նոյն օրը (4 Սեպտ.) սպաննուեցան երկու ամերիկացի սպաներ, երբ չինական մարտկոցները կը ռմբակոծէին Քուէմոյ կղզին, որ ազգայնական Չինացիներուն ձեռքն է: Այս վերջինները յարձակման պատասխանեցին օդանաւերով: Ամերիկացի երկու սպաները կը լողային ծովուն մէջ երբ ռմբակոծութիւնը սկսաւ: Ընդհ. կարծիքն այն է թէ կարմիր Չինացիները արշաւանք մը կը պատրաստեն Ֆորմոզայի դէմ, ուր կը գտնուի մարեշալ Չանկ Քայ Շէք: Կ'ըսուի թէ 140.000 զինուորներ կազմ եւ պատրաստ կը սպասեն այս արշաւանքին համար:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԹՈՒՆՈՒԶԻ ներքին ինքնավարութեան համար բանակցութիւնները սկսան շաբաթ օր, Կարթագինէի պալատին մէջ: Քաղաքը ամբողջովին դրօշազարդուած էր եւ ժողովրդական խրախճանքներ սարքուեցան: Այս առթիւ ճառեր խօսեցան Թունուզի պէյը եւ Ֆրանսայի ափրիկեան գործերու նախարարը, Պ. Ֆուշէ: Նոր Տեսթուր կուսակցութիւնը, որ արգիլուած էր 1938էն ի վեր, այսուհետեւ պիտի գործէ իբրեւ օրինաւոր կազմակերպութիւն: Հին Տեսթուրը արգիլուած կը մնայ 1933էն ի վեր: Բանակցութիւնները պիտի շարունակուին Փարիզի մէջ, ուրբաթ օր:

ՀՈԼԱՆՏԱԿԱՆ օդանաւ մը Շէնըն գետը ինկաւ (Իրլանտա) 56 ուղեւորներով եւ օդաչուներով, երբ Նիւ Եորք երթալու կը պատրաստուէր: 28 հոգի մեռան

Imp. Araxes - 46, Rue Richer, Paris (9e)

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Վճարումները դիւրացնելու համար կը խնդրենք մեր բաժանորդներէն դիմել հետեւեալ հասցէներուն.—

ԱՆԻԷՌ, ՔՈԼՈՄՊ – ՊՈՒԱ-ՔՈԼՈՄՊ.— Ընկերներ Յակոբ Հիսայեանի եւ Արամ Աւետիսեանի:

ԻՍԻ. եւ ՄԷՕՏՕՆ.— Ընկերներ Երուանդ Ատանալեանի, Նշան Դարբինեանի կամ սրճարանապետ Զատիկեանի:

ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՌՍԵԼ.— Ընկերներ Արփիար Մարտիրոսեանի եւ Կարօ Երանեանի:

ԱՆԿԷՆ – ՄՈՆՄՈՐԱՆՍԻ.— Ընկեր Սահակ Տէր Թովմասեանի:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Ընկեր Բարթող Փափազեանի:

ՇԱՒԻԼ – ՎԻՐՈՖԼԷ.— Ընկեր Գրիգոր Կիւլեանի:

ՊԱՆԵՕ – ՔԱՇԱՆ.— Ընկերներ Ներսէս Տականեանի կամ ԲարթամՊասմաճեանի:

ՍԵՒՐԱՆ.— Պ. Խլոյեանի:

Կանխայայտ շնորհակալութեամբ՝

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



Խորունկ վշտով կը սգանք մեր հօրեղբօր եւ մօրեղբօր

ՉԱՐՄԱՅՐ ՄԵԾԱՏՈՒՐԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցած է Յուլիս 22ին Սոֆիայի մէջ յետ երկարատեւ հիւանդութեան:

Մեծատուրեան ընտանիք եւ Ազգանուշ Գոնջէկիւլեան

ԽՄԲ.— Մեր ցաւակցութիւնները այս դառն կորուստին առթիւ: Պիտի խօսինք առանձին:

Տէր եւ Տիկին Սահակ Ճէլալեան եւ զաւակները խորունկ վշտով կ'ողբան իրենց մօր եւ մեծ մօր Այրի Տիկին Մարիամ Պուրսալեանի մահը եւ փոխան ծաղկեպսակի 3000 Ֆրանք կը նուիրեն Փարիզի Աղքատախնամին:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Եկեղեցաշէն յանձնախումբը իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ Նիսի եկեղեցւոյ Ազգ. վարչութեան անդամներուն, որոնք յանձնախումբիս քարտուղար Պ. Շ. Միքայէլեանի միջոցաւ նուիրած են շինութեան ֆոնտին 10 հազար ֆրանք:

Ինչպէս Կրընոպլի Ազգ. Միութիւնը անցեալին շատ սիրով թոյլատրած էր եկեղեցւոյն շինութեան պնակ դնել, նոյնը ըրաւ Նիսի Ազգ. Միութիւնը Ս. Աստուածածնի տօնին օրը, եկեղեցւոյ առջեւ թոյլատրելով վիճակահանութեան տոմսակներ սպառել, որմէ գոյացաւ 20 հազար ֆրանք:

Եկեղեցաշէն Տիկնանց Օժանդակը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները ի նպաստ եկեղեցաշինութեան ֆոնտին.— Տէր եւ Տիկին Թագւոր Թագւորեան երեք հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Յակոբ Վարժապետեան հազար, փոխան ծաղկեպսակի Տիկին Աննիկ Գարակէօզեանի մահուան առթիւ: Պ. Խաչիկ Սէմէրճեան երկու հազար ֆրանք:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ, ժամը ճիշդ 21.ին, Յոյներուն սրահը, 5 ռիւ Պօնըֆուա: Խիստ կարեւոր օրակարգ:

ՎԻԷՆ.— « Անի » կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ իրիկուն, սովորական հաւաքատեղին:

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը21-ին, 40 պիս, ռիւ Էթիէն Տօլէ սրճարանը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՅՈՒՍԱԲԵՐ, Գահիրէ.— Օգոստ. 24էն ի վեր: Օդանաւով թերթ չենք ստանար

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Կարնոյ Հայր. Միութեան Մարսէյլի վարչութիւնը, իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ տարաբախտ Հրանդ Փաստրմաճեանի մահուան առթիւ, Վահան Փաստրմաճեանի եւ բոլոր պարագաներուն: Փոխան ծաղկեպսակի վարչութիւնը հինգ հազար ֆրանք կը տրամադրէ Կարնոյ Յուշամատեանի հրատարակութեան համար (Պէյրութ):

ժողովը, համաձայն սահմանադրութեան այն յօդուածին որ կ'արտօնէ այդ քայլը, եթէ երկու դահլիճներ սապալին 18 ամսուան մէջ, բացարձակ մեծամասնութեամբ: Կացութեան ամէնէն դժուարին պարագաներէն մէկն ալ այն է որ մօտ 200 երեսփոխաններ, մէջն ըլլալով համայնավարները, բացարձակապէս հակառակ են գերմանական վերազինման, ինչ ձեւով ալ կատարուի :

× Միացեալ Եւրոպայի ընդհ. ժողովը, որ իր նիստերը կը շարունակէ Սթրազպուրկի մէջ, հաստատեց թէ եւրոպական բանակի ծրագիրը մեռած է, բայց չուզեր թողել զայն, միշտ յուսալով նոր ելք մը գտնել: Անհամբեր կը սպասուի Ֆրանսայի վարչապետին, որ պիտի պարզէ իր տեսակէտները:

× Ատլանտեան Խորհուրդը նիստի հրաւիրուած է Հոկտ. 15ին, Փարիզի մէջ : Լաւատեսներ կը կարծեն թէ մինչեւ այն ատեն կարելի պիտի ըլլայ լուծել Գերմանիոյ վերազինման խնդիրը :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄՈՍԿՈՒԱՅԻ անթելը առջի օր կը հաղորդէր թէ վերջերս հիւլէական ռումբի փորձեր կատարուած են Խ. Միութեան մէջ: Ամերիկացիները, որոնք լարուած ուշադրութեամբ կը հետեւին այս կարգի փորձերու, կ'ուզեն իմանալ թէ ի՞նչ էր պայթածը, պարզ հիւլէակա՞ն թէ ջրածին: Միւս կողմէ, կը հարցնեն թէ ինչ ըսել կ'ուզեն Սովետները, ծանուցանելով այս փորձերը — ահաբեկե՞լ Ամերիկայի հանրային կարծիքը :

ԼԻԲԱՆԱՆԻ նոր դահլիճը կազմուեցաւ բոլորովին անկախ տարրերէ : Վարչապետն է Սամի Սոլհ, որ 1952ին հրաժարեցաւ, ուժգնօրէն քննադատելէ վերջ նախորդ նախագահը, Պեշարա էլ Խուրի: Այս ելոյթէն ետքն էր որ նախագահը հարկադրուեցաւ հրաժարիլ, իր տեղը տալով Ք. Շամունի :

ԱԹԷՆՔԷՆ կը հեռագրեն թէ պաշտօնանկ եղաւ ոստիկանութեան վերատեսուչը, Անճէլօ Էվըրթ, այն ամբաստանութեամբ թէ օտար գործակալներ տեղաւորուած են կարեւոր պաշտօններու մէջ : Կը կարծուի թէ այդ գործակալները Անգլիացիներ են :

ԱՀՌԵԼԻ ՀՐԴԵՀ ՄԸ մոխիրի վերածեց Վիլմօրէն հաստատութիւնը, Ռիէօյլի փողոցին մէջ: Հինգ հարիւր հրշէջներ հազիւ յաջողեցան մարել հրդեհը, որ կը սպառնար աւելի ծանր աղէտի մը յանգիլ, վասն զի 25.000 լիտր էսանս կը գտնուէր մօտերը: Նիւթական վնասը 500 միլիոն Ֆրանքէն աւելի կը հաշուեն: Հրաշքով փրկուեցան վանք մը, դպրոց մը եւ հիւանդանոց մը: Վառած հաստատութիւնը փայտաշէն էր, կառուցուած՝ 1880ին:

ԹՈՒՆՈՒԶԻ Նոր Տեսթուր կուսակցութեան առաջնորդը, Պուրկիպա, որ Մոնթարժի աքսորուած է, արտօնուեցաւ պտտելու ամբողջ Ֆրանսայի մէջ, բացի Փարիզէն :

ՁԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԱՏԵԱՆԸ որոշեց չարունակել երկու գերման ամբաստանեալներուն՝ զօր. Օպէրկի եւ գնդ. Քնոխընի դատավարութիւնը, մերժելով պաշտպան փաստաբաններուն առարկութիւնները : Բուն դատը նոր կը սկսի: Երկու ամբաստանեալները պատասխանատու կը համարուին հազար պատանդներու գնդակահարման, 114.000 քաղաքացիներու ձերբակալութեան (ցեղային պատրուակով) եւ 80.000 Ֆրանսացիներու աքսորման :

ԱԼԺԵՐԻՈՑ նոր երկրաշարժին հետեւանքով Օրլէանվիլի մէջ կանգուն մնացած շէնքերն ալ փլան: Եւ սակայն վերաշինութեան աշխատանքը կանգ չէ առած: Ցնցումները զգալի էին մինչեւ Օրան :

ԱՐԱԲԱԿԱՆ ութ պետութիւններ հաւաքական յայտարարութիւն մը հրատարակեցին որով անմիջական օգնութիւն կը պահանջեն, զօրացնելու համար իրենց տնտեսական եւ զինուորական կացութիւնը, Իսրայէլի հանդէպ :

ԿԱՐՄԻՐ ՉԻՆԱՍՏԱՆԻ անթելը նոր սպառնալիք մը ուղղեց Ֆորմոզայի ազգայնականներուն դէմ, ազդարարելով թէ բանակը պատրաստ է ազատագրելու կղզին եւ խորտակելու Չանկ Քայ Շէքի հրոսախումբը :

### ՊԱՏԱՐԱԳ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Այս կիրակի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ Անուշաւան արեղայ Ջղջեան :

### ՎԵՐԱՄՈՒՏ

Ֆ. Կ. ԽԱՉԻ ՊՈՄՈՆԻ ԴՊՐՈՑԻ

Դասաւանդութիւնները կը սկսին Հոկտեմբեր 1ին: Ուսուցչուհին՝ Տիկին Ռ. Միստիք: Կը խնդրուի ծնողներէն շուտով արձանագրել իրենց զաւակները Ս. Սահակ Մեսրոպ եկեղեցւոյ կից սրահին մէջ :

### ՎԵՐԱԲԱՑՈՒՄ ԴՊՐՈՑԱՍԵՐԻ ԱՂՋԿԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

Դպրոցասէրի Աղջկանց վարժարանը պաշտօնապէս կը վերաբացուի 24 Սեպտեմբերէն սկսեալ: Դասախօսութիւնները կը վերսկսին Հոկտ. 1ին: Այս պարագան կը յանձնենք ծնողներու ուշադրութեան :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Գրիգոր Փանոսեան իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ փոխան ծաղկեպսակի նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր՝ ՏԻԿԻՆ ՄԱՐԻ ԴԱՆԻԷԼԵԱՆԻ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 8 Սեպտ.ին իր բնակարանին մէջ, Պօմոն, Մարսէյլ :

### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Նորապսակ հայ ամոլ մը կը փնտռէ երկու սենեակ, խոհանոցով միասին, Փարիզի կամ արուարձանի մէջ :

Գոհացուցիչ վճարում :

Դիմել «Յառաջ»ի հասցէով :

### ՓՈԽԱՆԱԿԵԼԻ ՏՈՒՆ

Ալֆորվիլի մէջ փոխանակելի (էչանժ) բնակարան մը կայ երկու սենեակ, խոհանոց, մէկ հա տալ տրամադրելի, 3 սենեակ խոհանոց: Դիմել՝

Tchoulakian, 33 Rue de Choisy Alfortville (3eme étage). Autobus 103, descendre Petit Pont.

### Կ'ՈՒԶՈՒԻ

Երիտասարդ մեքենագէտ հայուհի մը, որ կարենայ աշխատիլ ուժանիւով (մօթէօր) կարի մեքենայի մը վրայ, փոփլին էմփէրմէապլը կարելու համար :

Դիմել՝ Հայթայեանի՝

21, Rue des Jeuneurs, Paris (2)

Tél. GUT. 00 - 31



### ԾԱԽՈՒԻ Է

Հիւանդութեան պատճառով ծախու է նպարավաճառի խանութ մը, երկու սենեակ խոհանոցով, արուարձանի մը մէջ, շահեկան գին: Այցելութիւն մը կ'արժէ : Ժամադրութեան համար հեռաձայնել՝ OBE. 12-21



Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

### SURPRISE - PARTY

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի շրջանային վարչութեան հանդիպումը այս կիրակի ժամը 16ին, Ազգ. Տան Թատերասրահին մէջ, 32 ռիւ տը Թրէվիզ:

### ՈՒԽՏԻ ՕՐ ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉԻ

Առնուվիլ լէ Կոնէսի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ, այս տարի ալ տեղի պիտի ունենայ մատաղի օրհնութիւնը :

Արարողութեանց պիտի նախագահէ առաջնորդ Սերովբէ Ծ. վրդ. Մանուկեան, պատարագելով եւ քարոզելով :

Կը խնդրուի մասնակցիլ նուիրահաւաքութեան, մատաղցու ոչխարներ գնելու համար: Նոյնպէս հանդիսաւոր պատարագէն վերջ հոգեհանգիստ եկեղեցւոյ բարերարներուն համար :

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Կեդր. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ փարիզեան շրջանի (քաղաք եւ արուարձաններ) բոլոր ընկերները Սեպտեմբեր 25ին, Շաբաթ, ժամը ճիշդ 9ին, Սոսիէթէ Սավանթի մէջ : Կարեւոր օրակարգ :

ԴԵՐԱՍԱՆ Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ յանձնախումբի անդամները սեփողաբար ժողովի կը հրաւիրուին այս երկուշաբթի ժամը 6ին Ազգ. Տան մէջ:

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Մ.ղի վարչութիւնը՝ ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամուհիները այս Չորեքշաբթի օրը՝ կէսօրէ վերջ, ժամը 3ին, Տիկին Կէնճեանի բնակարանը, 172 Ռիւ Պուալօ, Գ. յարկ, ձախի վրայ, Բ. դուռը :

Կարեւոր օրակարգ.— ա) Հոկտ. 16ի պարահանդէսի (բացառիկ) կարգադրութիւն: բ) Ընթացիկ հարցեր :

Հրաւիրուած ինը պետութեանց արտաքին նախարարները օրական մէկ նիստէն աւելի պիտի չգումարեն, որպէսզի մասնագէտները ժամանակ ունենան քննելու դրուած առաջարկները: Սեղանի վրայ երեք յուշագիրներ կան Գերմանիոյ վերադինման մասին, — գերմանական, ֆրանսական եւ անգլիական: Նիստը պիտի բանայ Պ. Իտըն, իբրեւ ներկայացուցիչը հրաւիրող կառավարութեան: Յետոյ կարգով պիտի նախագահեն մասնակցող պետութեանց ներկայացուցիչները:

× Արեւմտեան Գերմանիոյ ընկերվարական կուսակցութեան առաջնորդը ուժգնօրէն քննադատեց վարչապետը, որ մերժած էր վիճաբանութիւն մը կատարել Իններու խորհրդաժողովէն առաջ: Իրեն համար ամէնէն առիպողական խնդիրն է Գերմանիոյ երկու մասերուն միացումը: Ինք միշտ կը նախընտրէ միացեալ եւ չէզոք Գերմանիա մը, հաւաքական ապահովութեան ցանցի մը մէջ, որբացմնայ ամէնուն առջեւ, համապատասխանէ Ազգաժողովին սկզբունքներուն եւ երաշխաւորուի Խ. Միութեան եւ Մ. Նահանգներուն կողմէ: Ահաւասիկ իր առաջարկները. — 1. Բանակցիլ Խ. Միութեան հետ, հաւաքական ապահովութեան մասին եւ քննել Գերմանիոյ ազատ ընտրութեանց խնդիրը. — 2. Կարելի եղածին չափ շուտ համաձայնութիւն մը կնքել Եւրոպայի մէջ, յանձնառութեան տակ դնելով Մեծն Բրիտանիան, տնտեսական, առեւտրական, ընկերային եւ մշակութային գործունէութեան տեսակէտով. — 3. Եթէ ձախողին Խ. Միութեան հետ կատարուած բանակցութիւնները, վերազինում Գերմանիոյ, կարգ մը պայմաններով:

Ընկերվարական առաջնորդը, որ Լոնտոն պիտի երթայ յառաջիկայ շաբթու, կը յուսայ տեսակցիլ Ֆրանսայի վարչապետին հետ:

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ ՏԵՍՉՈՒԹԻՒՆԸ կը շարունակէ քննել ոստիկանական տեսուչ Տիտի պաշտօնանկութեան խնդիրը, որ շատ բարդ հանգամանք ունի, ինչպէս կը բացատրեն տեղական թերթերը: Ամբաստանեալը յայտարարութիւն մը հրատարակեց ի պատասխան ներքին նախարարին ըսկոյին: Կ'ըսէ թէ խնդրոյ առարկայ վաւերագիրը համայնավարներուն ձեռքը անցած էր եւ թէ ինք յաջողեցաւ գտնել, երբ քննութիւն կը կատարէր թէ ինչպէս առացած են: Թերթերը կը հարցնեն թէ ինչո՞ւ պաշտօնանկ եղած է այնքան հաւատարիմ պաշտօնեայ մը: Տիտ կ'ըսէ թէ իր ամբողջ յանցանքը այն է որ չուզեց յայտնել տեղեկատուի մը անունը: «Ոստիկանական տեսուչ մը, ինչ մասնաւոր պաշտօն ալ ունենայ, պարտաւոր է հաւաքել իրեն հասած բոլոր տեղեկութիւնները եւ հաղորդել իր մեծաւորներուն»:

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ կառավարութիւնը վճռապէս մերժեց արեւելեան Գերմանիոյ խորհրդային մարզպանին այն բողոքագիրը որ կ'ըսէր թէ Ամերիկացիները լրտեսութիւն կը կատարեն, հարիւրաւոր գործակալները պահելով երկրին մէջ:

ՀԻՒԼԷԱԿԱՆ ՈՒԺԻ օգտագործման ամերիկեան ծրագիրը արձանագրուեցաւ Ազգաժողովի օրակարգին մէջ: Խ. Միութիւնն ալ հաւանած է քննութեան ենթարկել զայն:

ՃԱԿՆԴԵՂԻ գործածութեան մասին նոր օրէնք մը հրատարակուեցաւ, որով պիտի կրճատեն ալքոլի գտարանները, գարկ տալու համար շաքարի արտադրութեան: Ալքոլի գտարանները տարեկան քսան միլիառ ֆրանքի բաց մը կը ցուցնեն:

ԹՐԻԷՍԹԷԻ վիճելի շրջանը (Ա.) Իտալիոյ պիտի յանձնուի անյապաղ, համաձայնութիւն գոյացած ըլլալով, ինչպէս կը ծանուցանեն Լոնտոնի դիւանագիտական շրջանակները:

ՊՐԻՒՍԷԼԻ դաշինքին մնայուն խորհուրդը նիստ պիտի գումարէ վաղը, երկուշաբթի, ճշդելու համար Գերմանիոյ եւ Իտալիոյ ընդունելութեան պայմանները:

ՄԱՆԿԱԿԱՆ անդամալուծման համաճարակ մը ծագած է Սէն Բանթէնի մէջ: Բացառիկ միջոցներ ձեռք առնուեցան:

ԵՐԹԵՒԵԿԸ հետզհետէ անտանելի կը դառնայ Փարիզի փողոցներուն մէջ, երբեւ հետեւանք ինքնաշարժներու խճողման: Թերթերը կը գրեն թէ կացութիւնը աւելի պիտի ծանրանայ ինքնաշարժներու տարեկան յուցահանդէսին բացման առթիւ: Ոստիկանութեան վերատեսուչը այժմէն միջոցներ կը խորհի:

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս երեքշաբթի, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

ՄԱՐՍԷՅԼ. — Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբի դասախօսութիւնը այս երկուշաբթի ժամը 9ին իրենց ակումբին մէջ: Նիւթը՝ «Դաշնակցութեան ծագումը»: Դասախօս Փիլիկեան:

ՊԱՆԵԷՕ ՔԱՇԱՆ. — Ց. Կ. Խաչի ընդհ. ժողովը այս երկուշաբթի ժամը 20.30ին, ընկերուհի Հէքիմեանի բնակարանը: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է, կարեւոր օրակարգ:

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Ս. Պօղոս — Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ Ալֆորվիլի եւ շրջակայ հասարակութեան՝ թէ այս կիրակի Լոնտոնի հոգեւոր հովիւ Տ. Պսակ վարդապետ Թումայեան պիտի պատարագէ եւ պիտի քարոզէ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՀՈԿՏԵՄԲԵՐ 17ԻՆ**

ԱԼՖՈՐՎԻԼԻ ՀԱՅ ՄԱՐԶԱԿԱՆԻՆ պարահանդէսը: Պատուակալ նախագահութեամբ՝ Փարիզի քաղաքապետ BERNARD LAFAYի

ORCHESTRE JACQUES HELIAN

## ՎԵՐԱՄՈՒՏ

Փարիզի եկեղեցւոյ հովանաւորութեան տակ բացուած Պուա Քոլոմպի, Պանեէօ Քաշանի, Ժանթիյյիի, Լիլայի, Շավիլի, Կեդր. վարժարանի, Պելվիլի, Լիսէ Քոնտորսէի հինգշաբթի օրուան հայերէնի բոլոր դասընթացքները կը վերսկսին 30 Սեպտ. հինգշաբթի օր: Կը խնդրուի Փարիզի եւ շրջանի բոլոր ծնողներէն օր առաջ արձանագրել տալ իրենց զաւակները, որպէսզի որոշուած ժամանակին դասաւանդութիւնները կանոնաւոր կերպով կատարուին:

★

Ազգ. Տան հայերէնի դպրոցը կը բացուի այս հինգշաբթի 30 Սեպտ.: Կը դասաւանդէ Տիկին Էլիզ Այվազեան:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ. — Տէր եւ Տիկին Արսէն Շիմշիրեան, Տէր եւ Տիկին Սեդրակ Շիմշիրեան, Տէր եւ Տիկին Արամ Թէրզիպաշեան, Այրի Տիկին Էլիզ Շիմշիրեան, Տէր եւ Տիկ. Յարութիւն Շիմշիրեան (Ավինեօն), Տէր եւ Տիկին Էսմոն Շիմշիրեան, Տէր եւ Տիկին Քրիստոֆ Թէրզիպաշեան, Տէր եւ Տիկին Ժորժ Թէրզիպաշեան, Տէր եւ Տիկ. Ճոնի Մինասեան (Ամերիկա), Տէր եւ Տիկին Զամուեան (Եգիպտոս), Տէր եւ Տիկին Մանասէեան եւ զաւակները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, նամակով, հեռագրով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր, մեծ մօր, կեսրոջ, խնամիին, մօրաքրոջ, հօրաքրոջ եւ ազգականին Այրի Տիկին Բեբրոն Շիմշիրեանի (ծնեալ Ջանէլեան) մահուան առթիւ որ տեղի ունեցաւ Սեպտ. 15ին, 91 տարեկան հասակին, իրենց բնակարանին մէջ, Պոմոն:





Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

6, ՆՈՅԵՄԲԵՐ, ՇԱԲԱԹ ԳԻՇԵՐ ՍԱԼ Տ'ԻԷՆԱՅԻ ՄԷՋ

ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ի պատիւ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ

Մանրամասնութիւնները շուտով:

